Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 12

1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։*


# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ԵՎ ԳՅՈՒՂՈՒՄ ԿԱՏԱՐՎՈՂ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Հայաստանի կոլխոզները և սովխոզները թևակոխել են գյուղատնտեսական աշխատանքների պատասխանատու և լարված շրջանը՝ առատ բերքի հավաքման շրջանը։*

*Բերքահավաքը բարձր բերքի համար մղվող պայքարի ավարտման ամենակարևոր էտապն է։ «Բերքահավաքը,— սովորեցնում է ընկեր Ստալինը,— սեզոնային գործ է և նա չի սիրում երկար սպասել. հավաքեցիր ժամանակին՝ շահեցիր, ուշացար բերքահավաքում՝ տանուլ տվիր»։*

*Տնտեսա-քաղաքական այդ կարևորագույն կամպանիայի հաջող նախապատրաստումն ու անցկացումը զգալի չափով կախված է մասսաների մեջ կատարվող քաղաքական ագիտացիայի թափից, նրա կոնկրետությունից և նպատակասլացությունից։*

*ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն Ստալինյան պարտիական կազմակեր-*

պաւթյունում ագիտատորների հետ կատարվող աշխատանքի թերությունների և այդ աշխատանքը բարելավելու միջոցառումների մասին» իր որոշման մեջ տվել է ճշակնության մեջ կատարվող մասսայական քաղաքական աշխատանքի ծավալուն ծրագիրը։ Որոշման մեջ նշված է գյուղում կատարվող քաղաքական ագիտացիայի բովանդակությունը վճռաբար բարելավելու և գաղափարական մակարդակը բարձրացնելու անհրաժեշտությունը։

Բերքահավաքի օրերին գյուղում կատարվող քաղաքական ագիտացիայի նպատակը պետք է լինի՝ բոլոր կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին, սովխոզների ու ՄՏ կայանների բանվորներին մոբիլիզացնել օրինակելիորեն կատարելու բերքահավաքը, հացամթերումների և ՄՏ կայանների աշխատանքի բնավարձի պլանը, իրագործելու Հայաստանի կոլխոզնիկների կողմից ընկեր Ստալինին ուղարկված նամակում ստանձնած պարտավորությունները։ Քաղաքական ագիտացիան պետք է այնպես կազմակերպվի, որ նա կոլխոզնիկներին դաստիարակի աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի զգացումով և նպաստի նրանց արտադրական ակտիվության բարձ-



րացմանը։ Արտադրական թեմաների շուրջը զրույցներ անցկացնելու հետ միասին ագիտատորները պետք է կոլխոզնիկներին սիստեմատիկաբար պարզաբանեն պարտիայի ու կառավարության որոշումները, ժամանակակից միջազգային դրությունը, սովետական պետության արտաքին քաղաքականությունը, սովետական պետության, որը հետևողական պայքար է մղում խաղաղության և անվտանգության համար, պատերազմի հրձիգների դեմ, դեմոկրատիայի ուժերը համախմբելու համար։

Բերքահավաքի շրջանում մասսայական-քաղաքական ամբողջ աշխատանքը պետք է փոխադրվի դաշտ և անցկացվի անմիջականորեն բրիգադաներում և օղակներում։ Քաղաքական ագիտացիայի կազմակերպման ժամանակ պետք է շերտավորված մոտեցում ունենալ. ագիտատորները պետք է զրույցներ անցկացնեն տրակտորիստների, հնձվորների, կալսիչավարների հետ առանձին-առանձին։ Զրույցների ժամանակ հանձնարարվում է լայնորեն օգտագործել տեղական փաստերը և քաղաքական ագիտացիայի հարցերը շարունակ կապել տվյալ կոլխոզի, բրիգադայի և օղակի կոնկրետ խնդիրների հետ։

Բերքահավաքի կազմակերպման ժամա-

նակ ագիտատորների ուշադրության կենտրոնում պետք է գտնվեն կորուստների դեմ պայքարի հարցերը, ինչպես նաև բերքի հաշվառումը և նրա պահպանումը հափշտակողներից։

Ներկայումս չափազանց կարևոր նշանակություն են ստանում կարգապահության և աշխատանքի կազմակերպման հարցերը կոլխոզներում։ Հայտնի է, որ մեր կոլխոզնիկների ճնշող մեծամասնությունը բարեխղճորեն և ազնվորեն աշխատում է կոլխոզների հանրային տնտեսությունում։ Նրանք անձնվիրաբար իրենց ուժերը ի սպաս են դնում կոլխոզների հանրային հարստությունը էլ ավելի բազմապատկելու և զարգացնելու համար և իրենց աշխատանքով ամրապնդում են սովետական պետության հզորությունը։ Բայց կոլխոզներում կան դեռևս աննշան թվով կոլխոզնիկներ, որոնք քողարկվելով կոլխոզնիկի անվան տակ, վայելում են ազնիվ կոլխոզնիկների համար սահմանված բոլոր արտոնությունները և չարամտորեն խուսափում հանրային աշխատանքից, վարում են պորտաբույծ կյանք։ Կոլխոզի անդամ լինելու փաստը նրանք օգտագործում են սպեկուլյացիայով զբաղվելու և անձնական հարստություն դիզելու նպա-



տակով։ Այդ գոփողական տարրերն իրենց վարքագծով հաճախ խախտում են կարգապահությունը կոլխոզներում, վնաս են հասցնում կոլխոզին և բոլոր ազնիվ կոլխոզնիկներին։

Դրա համար էլ ագիտատորների խնդիրն է բացատրել, որ իսկական կոլխոզնիկները նրանք են, ովքեր ազնվորեն ու անձնվիրաբար աշխատում են արտադրության մեջ և իրենց աշխատանքով բազմապատկում են մեր հայրենիքի հարստությունը։ Դրա հետ միասին ագիտատորները պետք է քաղաքական ագիտացիայի հուրն ուղղեն կապիտալիզմի մնացուկների, աշխատանքային կարգապահությունը խախտողների դեմ, կազմալուծիչների և գոփողների դեմ, բոլոր նրանց դեմ, ովքեր վարում են պորտաբույծ կյանք։ Ընկեր Ստալինը նշում է, որ «ագիտացիա մղել չի նշանակում միայն համոզել, այլև մերկացնել»։ Մերկացնել լոդրերին, անբարեխիղճ աշխատողներին, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը կոլխոզներում, ամեն կերպ բարձրացնել սոցիալիստական գիտակցականությունը, ապահովել, որ բոլոր աշխատունակ կոլխոզնիկները լիովին մասնակցեն բերքահավա-

քին— այս է գյուղական ագիտատորների կարևորագույն խնդիրը։

Բերքահավաքի ժամանակ քաղաքական ագիտացիայի կարևորագույն խնդիրը պետք է լինի «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերջերս հրապարակած որոշման խոր պարզաբանումը։ Ագիտատորները պետք է իրենց բացատրական աշխատանքով օգնեն կոլխոզնիկներին հասկանալու և խորապես գիտակցելու կոլխոզների կազմակերպչական-տնտեսական հետագա ամրապնդման գործում այդ պատմական որոշման մեջ նշված միջոցառումների հսկայական նշանակությունը։

Անհրաժեշտ է ծավալել սոցիալիստական մրցության նոր վերելքի, պետք է մրցության մեջ ներգրավել բոլոր կոլխոզնիկներին, բերքահավաքի ասպարեզում բոլոր աշխատողներին։

Սոցիալիստական մրցությունը հաջողություն կունենա միայն այն ժամանակ, երբ պարտավորությունները սիստեմատիկաբար ստուգվեն և արդյունքները հայտնի դառնան բոլոր մրցողներին։ Այդ բանի համար ագի-



տատորները պետք է զրույցներ անցկացնեն մրցության արդյունքների մասին, ինչպես նաև կոյխոզնիկների ժողովներում ու արտադրական խորհրդակցություններում քննարկեն մրցության արդյունքները։ Մրցության արդյունքները մասսայականացնելու գործում պետք է լայնորեն օգտագործել ցուցադրական ագիտացիայի բոլոր միջոցները՝ պատի թերթերը, իլյինշովկաները, քաղաքական պլակատները, կոչերը, պատվո տախտակները, մրցության ցուցանիշների տախտակները, միջբրիգադային փոխանցիկ դրոշները և այլն։

Սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերին մեծ ուշադրություն են դարձնում Նոր Բայազետի շրջանի Կարմիր գյուղի ագիտատորները։ Այդ գյուղի ագիտատոր՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Հակոբ Ջրաղացպանյանն իր զրույցներում շարունակ կոլխոզնիկներին հիշեցնում է նրանց ստանձնած պարտավորությունների մասին և դրա հետ միասին նշում է, թե պարտավորությունների ո՞ր կետերն են կատարված և թե ինչպես պետք է կատարել այն, որը դեռևս չի կատարված։ Ընկ. Ջրաղացպանյանի ղեկավարած օղակը պարտավորվել է 16 հեկտար տարածության յուրա-

քանչյուր հեկտարից ստանալ 185 փութ հացահատիկ։ Պայքար մղելով բարձր բերքի համար, ընկ. Ջրաղացպանյանը իր աշխատանքի փորձը հաղորդում է մյուս կոլխոզնիկներին, նրանց մանրամասն սովորեցնում է, թե ինչպես պետք է մշակել ցանքերը բարձր բերք ստանալու համար։

Բերքահավաքի ժամանակ սոցիալիստական մրցության ծավալելու գործում կարևոր մոմենտ է հանդիսանում դաշտավարության և անասնապահության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրի մասսայականացումը։

Ագիտատորների խնդիրն է՝ բերքահավաքի ժամանակ ավելի լայնորեն ծավալել քաղաքական ագիտացիան, բոլոր կոլխոզնիկներին ներգրավել սոցիալիստական մրցության մեջ, նրանց մոբիլիզացնել ժամանակին և անկորուստ հավաքելու հացահատիկի այս տարվա առատ բերքը, ժամկետից շուտ կատարելու պետությանը հացահատիկ հանձնելու պլանը և պատվով կատարելու Հայաստանի կոլխոզնիկների կողմից ընկեր Ստալինին տրված խոստումը։

---

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՈՒ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

Վերջերս հրապարակված ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» բացառիկ կարևոր նշանակություն ունի սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման, կոլխոզների տնտեսական ու կազմակերպական հետագա ամրացման գործում։

Անշեղորեն կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին», կոլխոզային գյուղացիությունը, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ անցած 1947 թվականի ընթացքում հսկայական աշխատանք կատա-

րեց և աննախընթաց նվաճումների հասավ։

Սովետական մարդիկ, սոցիալիստական գյուղի աշխատավորները չեն բավարարվում ձեռք բերած նվաճումներով և միշտ նայում են առաջ, ամենօրյա քրտնաջան աշխատանք են կատարում նոր ու հզոր վերելք ստեղծելու համար։ Նրանք համառ պայքար են մղում մինչև վերջը կենսագործելու ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը՝ երկրում պարենամթերքի ու արդյունաբերական հումքի լիակատար առատություն և պետական անհրաժեշտ ռեզերվներ ստեղծելու համար։

Գյուղատնտեսության վերելքի հետպատերազմյան ստալինյան ծրագրի իրականացման գործում հզոր զենք է հանդիսանում ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նոր որոշումը։

«ՍՍՌՄ Մինիստրների Սովետը գտնում է,— ասված է այդ որոշման մեջ,— որ գյուղատնտեսության հետագա վերելքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, հանրային տնտեսության, կոլխոզների և կոլխոզնիկների եկամուտների աճման խնդիրները պահանջում են զգալիորեն բարելավել աշխատանքի կազմակերպումն ու կարգավորել վարձատրությունը կոլխոզներում»։



Կառավարությունը գտնում է, որ աշխատանքի կազմակերպման և վարձատրության բնագավառում կոլխոզների կատարած դրական մեծ փորձի հետ միասին շատ կոլխոզներում այդ գործում կան խոշոր թերություններ, որոնք արգելակում են կոլխոզների աշխատանքի արտադրողականության հետագա աճը և կոլխոզների հանրային տնտեսության զարգացումը։

Նշանավոր այդ որոշումը կոլխոզնիկների աշխատանքի կազմակերպման և վարձատրության գործում հիմնական թերություններ է համարում այն, որ կոլխոզներում հողի օգտագործման ասպարեզում գոյություն ունի դիմազրկություն, շատ կոլխոզներում չի վերացվել բրիգադաների կազմի հոսունությունը, բրիգադային ամրացված արտադրության միջոցները հաճախ օգտագործվում են բրիգադայից դուրս, առանց բրիգադիրի գիտության։ Մի շարք կոլխոզներում բավականաչափ չի գործադրվում աշխատանքի կազմակերպման իրեն արդարացրած օղակային սիստեմի փորձը. գործադրվում են հնացած, նվազեցված արտադրական նորմաներ և աշխօրերով աշխատանքի բարձրացված գնահատումներ, որի հետևանքով տեղի է ունենում աշխօրերի շռայլում, աշ-

խատանքի կատարման ժամկետի ձգձգում։ Մի շարք կոլխոզներում բավականաչափ տարածված է հավասարեցումը, որից օգտըվում են կոլխոզներում եղած ծուլական ու անբարեխիղճ տարրերը։ Անբավարար վիճակումն է գտնվում աշխօրերի ծախսման պլանավորումը և բացակայում է աշխօրերի ծախսման վերահսկողությունը կոլխոզների մեծ մասում։ Աշխօրերի ոչ ճիշտ ծախսման համար կոլխոզում ոչ ոք պատասխանատվության չի կանչվում, որի հետևանքով էլ նվազում է աշխօրերի նշանակությունը կոլխոզային եկամուտների բաշխման ասպարեզում։

Այնուհետև որպես հիմնական թերություն ՍՍՌՄ Մինիստրների Սովետը նշում է նաև այն, որ կոլխոզներում բավարար չափով չի կիրառվում մանր-խմբակային և անհատական գործավարձը. մի երևույթ, որի հետևանքով նվազում է կոլխոզնիկների շահագրգռվածությունը արտադրական նորմաների բարձրացման նկատմամբ և նրանց պատասխանատվությունը՝ կատարվող աշխատանքի որակի համար։ Կոլխոզների նախագահների աշխատանքի վարձատրության գոյություն ունեցող կարգը՝ նայած ցանքատարածության չափին, առանց հաշվի առնելու հան-



րային անասունների գլխաքանակի զարգացումը, նրանց մեջ նյութական շահագրգռվածություն չի ստեղծում հանրային անասնապահության զարգացման նկատմամբ և վնասակար ազդեցություն է գործում կոլխոզների ամբողջ տնտեսության վրա։ Մինիստրների Սովետը ճիշտ չի համարում բրիգադիրների և անասնապահական ֆերմաների վարիչների աշխատանքի վարձատրության այն կարգը, երբ նրանց աշխօրեր են տրվում առանց հաշվի առնելու նրանց աշխատանքի ծավալն ու արդյունքները։

***

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման առաջին բաժինը նվիրված է կոլխոզներում աշխատանքը կազմակերպելուն և աշխօրերի ծախսումը պլանավորելուն։ «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու գործում,— ասված է որոշման առաջին կետում,— կարևորագույն խնդիր համարել մշտական արտադրական բրիգադների, որպես արտելային աշխատանքի կազմակերպման հիմնական ձևի, առավելագույն ամրապնդումը»։

Կառավարությունը գտնում է, որ դաշտավարական բրիգադներին պետք է ամրաց-

նել հողամասեր առնվազն լրիվ ցանքաշրջանառության տևողությամբ. խոտհարքներ, ինչպես նաև բանող անասուններ, գյուղատնտեսական մեքենաներ, փոխադրական միջոցներ ու անհրաժեշտ արտադրական շենքեր և պետք է թույլ չտալ այդ բրիգադների կազմի հոսունություն։

Մինիստրների Սովետը սահմանել է, որ «արտադրական բրիգադային ամրացված ինվենտար, գյուղատնտեսական մեքենաներ, քաշող ուժն ու փոխադրական միջոցները գտնվում են բրիգադիրի տրամադրության տակ և չեն կարող վերցվել առանց նրա գիտության կամ կոլխոզի վարչության որոշման՝ բրիգադայից դուրս կատարվող աշխատանքներում օգտագործելու համար»։

Խորհուրդ է տրվում կոլխոզներին՝ ամրապնդել արտադրական բրիգադներում գոյություն ունեցող օղակները և ստեղծել նոր օղակներ, նրանց ամրացնել շարահերկ, տեխնիկական, բանջարանոցային կուլտուրաներ ու սերմնադաշտեր, իսկ որտեղ հնարավոր է՝ նաև հացահատիկային կուլտուրաներ։ Բրիգադայի ներսում աշխատանքի բաշխումը պետք է կատարել այն հաշվով, որ բրիգադների բոլոր օղակներում ստեղծվի հավասար բեռնվածություն, սակայն և



թույլ չտրվի ցանքերի ավելորդ մանրացում օղակների միջև։

Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, կատարված աշխատանքի որակի նկատմամբ պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով, խորհուրդ է տրվում կոլխոզներին՝ «Բրիգադաներում և օղակներում բոլոր գյուղատնտեսական աշխատանքները որպես կանոն կատարել անհատական ու մանր-խմբային գործավարձի հիման վրա, դրանով իսկ վերացնել խմբովին աշխատանքը և հանրային աշխատանքում յուրաքանչյուր կոլխոզնիկի մասնակցության դիմազրկությունը»։

Աշխատանքային կարգապահության ամրացումը մեր կոլխոզներում վճռական նշանակություն ունի կոլխոզները տնտեսապես և կազմակերպչորեն ամրացնելու գործում։ Ուստի Մինիստրների Սովետը խորհուրդ է տալիս կոլխոզների վարչություններին՝ անհրաժեշտության դեպքում ամեն ամիս քննարկել աշխատունակ կոլխոզնիկների հանրային աշխատանքների մասնակցության հարցը և ներգործման միջոցներ ձեռք առնել աշխատանքային կարգապահությունը խախտող անփույթ կոլխոզնիկների նկատմամբ։

Աշխօրերի ճիշտ ծախսման և աշխօրերի արժեքի բարձրացման նպատակով կառավարությունը անհրաժեշտ է համարում կոլխոզներում տարեկան արտադրական պլանը և ելքի ու մուտքի նախահաշիվը կազմելու հետ միաժամանակ կազմել նաև աշխօրերի ծախսման պլանն ըստ տնտեսության ճյուղերի, ըստ յուրաքանչյուր կուլտուրայի կամ միանման կուլտուրաների խմբի, ըստ անասունների տեսակների, ըստ աշխատանքի յուրաքանչյուր օբեկտի շինարարության մեջ և այլն: Աշխօրերի ծախսման պլանները թե ամբողջ կոլխոզում և թե առանձին բրիգադներում, օղակներում ու անասնապահական ֆերմաներում պետք է կազմել այն առաջադրանքների հիման վրա, որոնք սահմանվել են պետական պլանով ցանքատարածության, բերքատվության ու անասնապահության զարգացման համար, կոլխոզներում ընդունված արտադրական նորմաների և աշխօրերով աշխատանքների գնահատման հիման վրա և հաստատել դրանք կոլխոզնիկների ընդհանուր ժողովներում: Կոլխոզների վարչությունները և վերստուգիչ հանձնաժողովները պետք է խիստ հսկողություն սահմանեն աշխօրերի ճիշտ գրանցման նկատմամբ: Ոչ պակաս քան յուրաքանչյուր



եռամսյակը մեկ անգամ, ինչպես նաև տարվա վերջին, եկամուտները բաշխելուց առաջ, համեմատեն գրանցված աշխօրերի քանակն այն աշխօրերի քանակի հետ, որոնք նախատեսված են պլանով կատարված աշխատանքների ծավալի համար, հայտնաբերել աշխօրերը շռայլող մեղավոր անձանց և ստուգման արդյունքների մասին համապատասխան առաջարկներով զեկուցել կոլխոզնիկների ընդհանուր ժողովին:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետը հավանություն է տվել ՍՍՌՄ կառավարության կից Կոլխոզների գործերի խորհրդի և ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության ներկայացրած արտադրական օրինակելի նորմաներին և աշխատանքի միասնական գնահատականներին: Այդ նորմաներում արտահայտված են կոլխոզների և կոլխոզնիկների առաջավոր փորձը, որը ապահովում է աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակը համեմատած գոյություն ունեցող նորմաների հետ:

***

Մինիստրների Սովետի որոշման երրորդ, չորրորդ և հինգերորդ բաժինները նվիրված են դաշտավարության և անասնապահության

մեջ կոլխոզնիկների աշխատանքի վարձատրության կարգին, կոլխոզների նախագահների, բրիգադիրների, ֆերմաների վարիչների, անասնաբուծության վարիչների և հաշվետարների (հաշվապահների) աշխատանքի վարձատրության կարգին։

Մինիստրների Սովետի ներկա որոշումը, որը ելնում է ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումից, պահանջում է կոլխոզնիկների աշխատանքի վարձատրությունը կատարել կատարված աշխատանքի քանակի ու որակի խիստ հաշվառման սկզբունքով, այն առումով, որ խրախուսվի առաջավոր, ազնիվ աշխատանք կատարող կոլխոզնիկը և մշտական հարվածի տակ գտնվի ծույլ ու անբարեխիղճ աշխատողը։

Որոշման 19-րդ կետը խորհուրդ է տալիս կոլխոզնիկներին, «որ նրանք եկամուտները բաշխեն, հաշվի առնելով բրիգադայի, իսկ բրիգադաներում՝ օղակների հավաքած բերքը, այն հաշվով, որպեսզի ավելի բարձր բերք ստացած բրիգադաների ու օղակների կոլխոզնիկները ստանան համապատասխանորեն ավելի բարձր վարձատրություն, իսկ ցածր բերք ստացած բրիգադաների և օղակների կոլխոզնիկները իրենց աշխատանքի համար ստանան ավելի ցածր վարձատրու-



թյուն»։ Այդ նպատակով կոլխոզնիկների ընդհանուր ժողովների որոշմամբ անհրաժեշտ է համարվում մտցնել աշխօրերի գրանցման ու բաշխման հատուկ կարգ։

Վարձատրման նոր կարգ է սահմանված նաև անասնապահության մեջ կոլխոզնիկների աշխատանքի վարձատրման վերաբերյալ։ Կառավարության որոշման 28-րդ կետում ասված է.

«Աշխատանքի կազմակերպումը և վարձատրությունը էլ ավելի բարելավելու, աշխօրերի գրանցման ասպարեզում կարգ ու կանոն սահմանելու ու անասնապահության բարձր մթերատվության հասնելու գործում կոլխոզնիկների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և անասունների գլխաքանակը ավելացնելու նպատակով, կոլխոզներին խորհուրդ տալ, որ անասնապահության մեջ աշխատող կոլխոզնիկների աշխատանքի վարձատրությունը սահմանվի, ելնելով նրանց ստացած կաթից, խուզած բրդից, ստացած և աճեցրած մատղաշից, կենդանի քաշի աճից և բանող ու մթերատու անասունների բտվածությունից»։

Ելնելով դրանից, կոլխոզներին խորհուրդ է տրվում կոլխոզների ընդհանուր ժողովների որոշմամբ մտցնելու կառավարության կող-

մից ընդունված արտադրական օրինակելի նորմաները, գործավարձային գնահատումները և աշխօրերի գրանցման կարգը՝ ձիաբուծության ասպարեզում, խոշոր եղջերավոր անասունների, ոչխարաբուծական, խոզաբուծական և թռչնաբուծական ֆերմաներում։ Անշուշտ, մեր կոլխոզային գյուղացիությունը, որը մեծ սիրով ու գոհունակությամբ ընդունեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ներկա որոշումը, անշեղորեն առաջնորդվելով իր հարազատ կառավարության իմաստալից ու գործնական խորհուրդներով նոր և առավել բարձր նվաճումների կհասնի սոցիալիստական անասնապահության հետագա զարգացման ճանապարհին։

Լուրջ փոփոխություն է մտցված կոլխոզների նախագահների, բրիգադիրների, ֆերմայի վարիչների, անասնաբուծության վարիչների և հաշվետարների (հաշվապահների) աշխատանքի վարձատրման կարգի մեջ։ Վերացնելով հնացած ու ոչ ճիշտ վարձատրման սիստեմը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետը՝ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք ստանալու գործում կոլխոզների նախագահների, բրիգադիրների, ֆերմաների վարիչների, հաշվետարների շահագրգռվածությունը բարձրացնելու, հանրային անաս-



նապահությունը զարգացնելու և դրամական եկամուտները ավելացնելու նպատակով սահմանում է վարձատրման նոր կարգ։ Վարձատրման այս նոր կարգը ընդգրկում է կոլխոզային ամբողջ աշխատանքը իր բազմազան կողմերով, հաշվի է առնում նրանց աշխատանքի ծավալն ու բարդությունները։ Կոլխոզի նախագահը, բրիգադիրը, ֆերմայի վարիչն ու հաշվապահը լրացուցիչ վարձատրություն են ստանում այն դեպքում, երբ գերակատարվում են պլանների քանակական ու որակական ցուցանիշները, և ընդհակառակը՝ նյութական պատասխանատվություն են կրում պլանները թերակատարվելու դեպքում։

Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը, գյուղատնտեսության ողջ աշխատավորները, մտնելով համաժողովրդական մրցության մեջ պայքարի են դուրս եկել կատարելու ընկեր Ստալինին տված իրենց խոստումը։

Աշխատանքի այս եռուն շրջանում, երբ արդեն որոշվում է բարձր բերքի բախտը, երբ սոցիալիստական անասնապահության մեջ մթերատվության աճման վճռական օրեր են, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը մի վիթխարի ուժ է սոցիալիստական գյուղատնտեսության նոր ու հզոր վերելք ստեղծելու համար։

## ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԱՌԱՆՑ ԿՈՐՍՏԻ ՀԱՎԱՔԵԼ ՀԱՑԱԲՈՒՅՍԵՐԻ ԲԵՐՔԸ

*Գարնանացանի հաջող ավարտումը և բարենպաստ եղանակը ռեսպուբլիկայի շրջանների մեծ մասում անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծել այս տարի գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր բերք ստանալու համար:*

*Հայաստանի կոլխոզային դաշտերում հասունանում է հացաբույսերի լավ բերք: Օրեցօր ընդլայնվում է հացաբույսերի հասունացման գոտին: Ռեսպուբլիկայի ցածրավայր շրջաններն արդեն սկսել են բերքահավաքը: Հացաբույսերի բերքահավաքի առաջին օրերը ցույց են տալիս, որ այս տարի բերքահավաքի աշխատանքները ընթանում են բարձր վերելքի պայմաններում:*

*Հայաստանի կոլխոզնիկները, մեքենա-տրակտորային կայանների աշխատողները և գյուղատնտեսության մասնագետները, ընկեր Ստալինին գրած նամակում ստանձնած ի-*



*րենց պարտավորությունների իրագործման համար պայքարելով, թևակոխել են բարձր բերքի համար մղվող պայքարի վճռական փուլը:*

*Հացաբույսերի ժամանակին և անկորուստ բերքահավաքը, հացամթերումների և ՄՏ կայանների աշխատանքի բնավարձի պլանի կատարումը — ահա այն գլխավոր խնդիրները, որոնք այժմ կանգնած են յուրաքանչյուր կոլխոզի և մեքենա-տրակտորային կայանի առաջ: Բերքահավաքի և մթերումների արդյունքներով է գնահատվելու տեղական պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների, ՄՏ կայանների և կոլխոզների վարչությունների աշխատանքը:*

*Գիտակցելով բերքահավաքին բազմակողմանիորեն և օրինակելիորեն նախապատրաստվելու ամբողջ կարևորությունը, առաջավոր շրջաններն ու ՄՏ կայանները ժամանակին կատարել են բերքահավաքի նախապատրաստական բոլոր աշխատանքները:*

*Ռեսպուբլիկայի ՄՏ կայանների մեծ մասն ամբողջովին ավարտել է կոմբայնների ու կալսիչների նորոգումը: Մի շարք կոլխոզներում ավարտված է նաև բերքահավաքի ձիաքարշ մեքենաների ու գյուղատնտեսական ձեռքի գործիքների նախապատրաստումը:*

Նոր բերքի հացահատիկն ընդունելու համար նորոգված ու ախտահանված են պահեստային շենքերը։

Սակայն պետք է նշել, որ դեռ բոլոր ՄՏ կայաններն ու կոլխոզները չեն, որ ամբողջովին կատարել են բերքահավաքի ինվենտարի, կոմբայնների ու կալսիչների նորոգումը։ Դեռ ամենուրեք չէ, որ ավարտված է պահեստների ու շտեմարանների նախապատրաստումը։

Կոմբայնների և կալսիչների նորոգումը ձգձգվել է Ալավերդու, Ալագյազի, Ամասիայի, Բասարգեչարի (առաջին), Կալինինոյի, Սևանի, Սիսիանի և մի շարք այլ ՄՏ կայաններում։ Կոլխոզների հնձիչ մեքենաների նորոգումը դեռևս ավարտված չէ Կալինինոյի, Ստեփանավանի, Ամասիայի, Ախուրյանի և Կրասնոսելսկի շրջաններում։

Բերքահավաքի մեքենաների՝ կոմբայնների ու կալսիչների նորոգումը մոտակա օրերին լրիվին ավարտելու համար մեքենա-տրակտորային կայանների աշխատողներից և կոլխոզների վարչություններից պահանջվում է ճկուն և հստակ կազմակերպել նորոգման աշխատանքը և խիստ վերահսկողություն հաստատել ինչպես նորոգման որակի, այն-



պես էլ ամենօրյա առաջադրանքների կատարման նկատմամբ։

Ռեսպուբլիկայի ՄՏ կայանների մեքենա-տրակտորային պարկը այս տարի հաջողությամբ կատարում է կոլխոզների հետ կնքած պայմանագրերը։ Գարնանային տրակտորային աշխատանքների հիմնական տեսակների գծով պլանը կատարված է զգալի գերազանցումով։ ՄՏ կայանները կոլխոզներին ակտիվորեն օգնել են 1948 թվին լավ բերք աճեցնելու համար։

Անհրաժեշտ է ամրապնդել ՄՏ կայանների ձեռք բերած հաջողությունները և բոլոր պայմաններն ապահովել, որ բերքահավաքի առաջին իսկ օրերից կոմբայններն ու կալսիչներն աշխատեն անխափան։ ՄՏ կայանների ղեկավարների և կոլխոզների վարչությունների խնդիրն է վաղօրոք նախատեսել ու նախապատրաստել ամեն ինչ՝ կոմբայնների բարձր արտադրողական աշխատանքն ապահովելու և հացահատիկի կորուստները կանխելու համար։ Ամենուրեք պետք է կազմակերպվի բունկերների բեռնաթափումը երթի ժամանակ, լուսավորություն անցկացվի գիշերային աշխատանքի համար, հողամասերը նախապատրաստվեն կոմբայնային բերքահավաքին։ Առանձնահատուկ ուշա-

դրությունը պետք է դարձվի ինչպես կոմ-
բայնավարների, այնպես էլ կոմբայնային
ագրեգատների համար աշխատող մարդկանց
ընտրությունը, կոմբայնավարների, տրակտո-
րիստների և բերքահավաքի գործում աշխա-
տող կոլխոզնիկների կուլտուրական ու կեն-
ցաղային սպասարկումը կազմակերպելուն։

Բերքահավաքը և մթերումները տնտեսա-
քաղաքական կարևորագույն խնդիրներ են,
նրանց հաջող լուծումից է կախված բը-
նակչության մատակարարումը պարենով,
արդյունաբերությունը՝ հումքով և պետական
անհրաժեշտ ռեզերվների ստեղծումը։

Բերքահավաքը և մթերումները հաջող
անցկացնելու երաշխիքը մեքենային տեխ-
նիկան և ռեսպուբլիկայի գյուղատնտեսու-
թյան մեջ եղած աշխատանքային բոլոր ռե-
զերվները ճիշտ օգտագործելու հմտությունն
է։ Աշխատանքի օրինակելի կազմակերպու-
մը և գիտակցական բարձր կարգապահու-
թյունը յուրաքանչյուր տրակտորային ու
դաշտավարական բրիգադայում, օղակում
որոշում է բերքի բախտը։ Պետք է հասնել
այն բանին, որ բերքահավաքի ժամանակ
աշխատեն բոլոր աշխատունակ կոլխոզնիկ-
ները։ Դրա հետ միասին անհրաժեշտ է բեր-
քահավաքի աշխատանքում ավելի լայնորեն



ներգրավել կոլխոզների անդամ չհանդիսա-
ցող գյուղական աշխատունակ բնակչությա-
նը։ Բերքահավաքի ժամանակ կոլխոզներին ոչ
փոքր օգնություն կարող են ցույց տալ գյու-
ղական վայրերում և շրջանային կենտրոն-
ներում գտնվող միջնակարգ դպրոցների ու
տեխնիկումների աշակերտները։

Բերքահավաքի աշխատանքներում վճռա-
կան նշանակություն ունի ժամանակի գործո-
նը։

Մի շարք տարիների պրակտիկան ցույց է
տալիս, որ հացահատիկի առավել մեծ կո-
րուստները հատկապես կապված են կծղելու
հետ, բայց չի կարելի մոռանալ, որ բերքա-
հավաքը ժամանակին կատարելու դեպ-
քում էլ հասկերի որոշ մասը կարող է մնալ
դաշտում։ Դրա համար էլ պետք է ամենու-
րեք հասկերը հավաքել ինչպես փոցխով,
այնպես էլ ձեռքով, այդ աշխատանքում
լայնորեն ներգրավելով պատանիներին ու
դպրոցականներին։

Բոլոր աշխատանքները՝ հունձը, խուրձ
կապելը, դիզելը, կալսելը պետք է տեղի ու-
նենան անընդհատ կոնվեյերի սիստեմով։
Բերքահավաքի միայն այսպիսի կազմակեր-
պումը կապահովի պետությանը հացահատիկ
հանձնելու պարտավորությունների կատա-

րումը և ՄՏ կայանի աշխատանքի բնավարձի ժամանակին հանձնումը։

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումը պարտիական և սովետական կազմակերպություններից պահանջել է. «Կալսման հենց սկզբից հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլխոզ, յուրաքանչյուր սովխոզ ամեն օր մասնակցի պետությանը հացահատիկ հանձնելու գործին և գտնվի պարտիական ու սովետական կազմակերպությունների ղեկավար ներգործման տակ՝ մինչև հացահատիկի հանձնման պլանի լրիվ կատարումը, հատուկ ուշադրություն նվիրելով ետ մնացող կոլխոզներին, սովխոզներին և շրջաններին»։

Գյուղատնտեսական և մթերման օրգանները, ՄՏ կայանի ղեկավարները պարտավոր են բերքահավաքի առաջին իսկ օրերից գործն այնպես կազմակերպել, որ կոլխոզները մասսայաբար հանձնեն բնավարձը և կոլխոզներին ակտիվորեն օգնեն հացամթերումների պետական պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

ՄՏ կայանների դիրեկտորները պարտավոր են տրակտորային յուրաքանչյուր բրիգադայի համար սահմանել՝ նրանց կողմից սպասարկվող կոլխոզներից բնավարձի հանձնման հնգօրյա առաջադրանքներ։ Կոլխոզներին պետք է ամրացվեն ՄՏ կայանի ղեկավար աշխատողներ և տրակտորային բրիգադաների բրիգադիրները՝ հունձի, կալսման և բնավարձը մթերակայաններին հանձնելու գործում նրանց օգնություն ցույց տալու համար։

ՄՏ կայանները և տրակտորային բրիգադաները, որոնք չեն կատարել գարնանային տրակտորային աշխատանքների սահմանված ծավալը, պետք է լրացուցիչ առաջադրանք ստանան հունձի, կալսման, հացահատիկի փոխադրման գծով, որ ծածկեն ոչ միայն գարնանային աշխատանքների ժամանակ առաջացած բնավարձի պարտքը, այլև գերակատարեն պլանով նախատեսվածը։

Մինչև մասսայական բերքահավաքն սկսելը շատ քիչ օրեր են մնում։ Անհրաժեշտ է բոլոր կոլխոզներում ու ՄՏ կայաններում անհապաղ ուղղել բերքահավաքի նախապատրաստական աշխատանքներում եղած նաև կազմակերպչական անկանոնությունները։ Հարկավոր է բոլոր կոլխոզներում մինչև բերքահավաքն սկսելը ավարտել պահեստային շենքերի, ծածկված կալատեղերի, տրանսպորտի նախապատրաստումը և այլն։

Ամենուրեք պետք է կազմակերպվի բերքահավաքի աշխատանքների համար հաս-

կացված բանող անասունների հանգիստը և կերակրումը։

Հունձի և կալսման աշխատանքն այնպես պետք է կազմակերպվի, որ բոլորովին բացառվի հացահատիկի կորստի, հափշտակումների, վատնումների հնարավորությունը։ Բոլոր կոլխոզներում անհրաժեշտ է ամրացնել օղակները, լայնորեն կիրառել անհատական գործավարձ և կազմակերպել աշխատանքի ճիշտ հաշվառում։

Բարձր բերքը բազմապատկում է կոլխոզի հարստությունը և յուրաքանչյուր ոք, որ ազնվորեն աշխատել է, բարձր վարձատրություն կստանա իր աշխատանքի համար։ Այնտեղ, որտեղ ապահովված է լավ բերքահավաքը և կոլխոզը կատարում է իր առաջին պատվիրանը՝ հացահատիկի հանձնումը պետությանը, կոլխոզնիկներն ավանս կստանան նոր բերքի հացահատիկից։ Հարկավոր է միայն ճիշտ ավանսավորել կոլխոզնիկներին։ Ավանսը տալ խստիվ ըստ աշխօրերի, ավանսից զրկել նրանց, ովքեր առանց որևէ հարգելի պատճառի չեն աշխատում կոլխոզում։ Պետք է լոդրերին հնարավորություն չտալ օգտվելու ուրիշների աշխատանքից։

Բերքահավաքի այս պատասխանատու շրջանում հարկավոր է ավելի լայնորեն ծա-



վալել քաղաքական-մասսայական աշխատանքը գյուղում, ձգտել, որ յուրաքանչյուր կոլխոզնիկ և ՄՏ կայանի աշխատող հասկանա բերքահավաքը ժամանակին ու անկորուստ կատարելու քաղաքական ամբողջ կարևորությունը և պայքարի հացահատիկը ժամկետից առաջ պետությանը հանձնելու համար։

Տարակույս չկա, որ մեր սիրելի առաջնորդ մեծ Ստալինին տված խոստումներն անպայման կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցության շնորհիվ Հայաստանի կոլխոզնիկները, կոլխոզնիկուհիները, ՄՏ կայանի աշխատողները և գյուղատնտեսության մասնագետները կկարողանան օրինակելիորեն կատարել բերքահավաքը, ժամկետից շուտ կատարել հացամթերումների պլանը և դրանով իսկ ապահովել մեր ժողովրդի բարեկեցության հետագա վերելքը և մեր սոցիալիստական Հայրենիքի հետագա ծաղկումը։

Ն. ՂԱԶԱՐՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստր)

# ԴԱՇՏԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՈՒՄ ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ԱՆՀԱՏԱԿԱՆ ԳՈՐԾԱՎԱՐՁԸ

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» կոլխոզներին խորհուրդ է տալիս, որ գյուղատնտեսական աշխատանքները կոլխոզում կատարվեն գործավարձի հիման վրա։ Կառավարության այդ խորհուրդը կազմակերպող և մոբիլիզացնող հսկայական նշանակություն ունի ոչ միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման տեսակետից, այլ նաև աշխատանքի վարձատրման սոցիալիստական սկզբունքի՝ «Ով չի աշխատում, նա չի ուտում», «Յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ նրա աշխատանքի» պահանջի կենսագործման տեսակետից։



Մեր պարտիան, կոլխոզային կարգեր ստեղծող ընկեր Ստալինի ղեկավարությամբ, միշտ էլ անողոք պայքար է մղել կոլխոզներում վարձատրման գործում թույլ տրվող «ձախ» հավասարեցման երևույթների դեմ, որպես հակակոլխոզային, վնասակար պրակտիկայի։ Գործավարձի կիրառումը կոլխոզներում ունի կարևոր նշանակություն։ Գործավարձ նշանակում է կոլխոզնիկի կատարած աշխատանքի վարձատրություն ոչ թե ժամանակի համար, այլ կատարած աշխատանքի քանակի և որակի համապատասխան։

Գյուղատնտեսական աշխատանքներում կիրառվում են գործավարձի մի շարք ձևեր։ Գարնան որոշ աշխատանքներ՝ վար, փոցխ, կուլտիվացիա, ցանք, պահանջվում է կատարել սեղմ ժամկետում։ Այդ գործում կոլխոզնիկներին շահագրգռելու նպատակով, պարտիայի ու կառավարության որոշմամբ, նրանց աշխօր է գրանցվում՝ փոցխի առաջին երկու օրը, վարի, կուլտիվացիայի և ցանքի առաջին վեց օրը արտադրական նորմայով սահմանված առաջադրանքը կատարելու դեպքում կրկնակի չափով, իսկ նորման չկատարելու դեպքում սովորական կարգով։ Աշ-

խատանքի վարձատրման նման ձևը կոչվում է պարգևային (պրեմիալ) գործավարձ։

Դաշտային մի շարք կարևոր և հրատապ աշխատանքներում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու նպատակով, կիրառվում է վարձատրության նաև մի ուրիշ ձև։ Երբ տրակտորիստը ՄՏՋ կամ ԽՏՋ տրակտորով աշխատելիս կատարում է հերթափոխության արտադրական նորման, նրա հաշվին գրանցվում է 4,5 աշխօր, իսկ երբ արտադրական նորման գերակատարվում է 25 տոկոսով, վարձատրության միավորի չափը նույնպես ավելանում է 25 տոկոսով, գերակատարվելու դեպքում՝ 50 տոկոսով և այլն։ Վարձատրության այս ձևը կոչվում է պրոգրեսիվ գործավարձ։ Սակայն կոլխոզներում հիմնականում կիրառվում է ուղղակի կամ պարզ գործավարձը։ Այդ գործավարձի էությունն այն է, որ կոլխոզներում յուրաքանչյուր աշխատանքի համար նախօրոք մշակված արտադրական նորմայով և վարձատրության չափով կոլխոզնիկի կատարած աշխատանքի դիմաց գրանցվում են աշխօրեր։ Այսպես, օրինակ՝ կոլխոզի արտադրական նորմայով սահմանված է, որ 0,6 հեկտար վար կատարելու համար տրվում է 1,5 աշխօր։ Կոլխոզնիկի



կողմից այդ նորման թերակատարելու դեպքում, համապատասխանորեն պակասում է գրանցվող աշխօրի չափը։ Վարձատրության այս կարգը խոշոր դեր է խաղում կոլխոզներում աշխատանքային կարգապահության ամրապնդման համար և մեծագույն խթան է հանդիսանում աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

Գործավարձի կիրառումը կոլխոզների աշխատանքի պրակտիկայում արտահայտվում է մի քանի ձևով. մի շարք կոլխոզներում դաշտային աշխատանքները՝ ցանքը, մշակումը, բերքահավաքը և այլն, կատարվում են բրիգադայի կամ օղակի ամբողջ աշխատող ձեռքերի միջոցով, մեծ խմբերով՝ 10—15 և ավելի աշխատողներով միևնույն դաշտում, միևնույն կուլտուրայի վրա և աշխատանքի վերջում բոլորին էլ հավասար կերպով աշխօրեր են գրանցվում նրանց կատարած աշխատանքի քանակի և որակի համաձայն։ Արտաքուստ կարծես պաշտպանվում են գործավարձի սկզբունքները, քանի որ աշխօրերը գրանցվում են համաձայն նրանց կատարած աշխատանքի քանակի և որակի, բայց իրականում աշխատանքի նման կազմակերպումը տեղիք է տալիս վարձատրության հավասարեցման, լավագույն կոլխոզնիկների մեջ մեռցնում է

աշխատանքային եռանդն ու շահագրգռվածությունը, դիմագրկում կոլխոզնիկին, որից և օգտվում են լոդրերը, թաքնվելով լավ աշխատողների ձեռք բերած ցուցանիշների ետևում: Այդ տեսակետից որպես ցայտուն օրինակ կարող են ծառայել Կիրովականի շրջանի Հայկական Վարդանլու, Համզաչիման, Ստեփանավանի շրջանի Լեջան, Գուլագարակ, Դիլիջանի շրջանի Շամախյան գյուղերի կոլխոզները, որտեղ դաշտային բոլոր աշխատանքները կատարում են մեծ խմբերով: Եվ պատահականություն չէ, որ այդ կոլխոզները գյուղատնտեսության բոլոր կուլտուրաների գծով խիստ կերպով թերակատարում են բերքատվության պետական պլանները և մեծ թվով կոլխոզնիկներ չեն կատարում աշխօրերի պարտադիր մինիմումը:

Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների և առաջավոր կոլխոզների փորձը ցույց է տալիս, որ ուր ճիշտ կերպով է կիրառվում անհատական գործավարձը, այնտեղ ձեռք են բերվում բերքատվության փայլուն ցուցանիշներ: Նոր-Բայազետի շրջանի Կարմիր, Հացառատ, Ախտայի շրջանի Ցանտան, Սիսիանի շրջանի Բորիսովկա գյուղերի կոլխոզները լավագույն օրինակ են ցույց տալիս այդ գործում:



Կոլխոզներում որոշ աշխատանքներ՝ վար, մարկոս քաշել, բարդ մեքենաների օգտագործում, հացահատիկի և խոտի դիզելը և այլն, պահանջում են մի քանի կոլխոզնիկների համատեղ աշխատանք: Նման կարգի աշխատանքների կատարման ժամանակ անհրաժեշտ է կիրառել մանր խմբակային գործավարձը:

Անհատական գործավարձը կոլխոզներում արտահայտվում է երկու ձևով՝ առաջինը, երբ բրիգադիրը կամ օղակավարը ամեն օր յուրաքանչյուր կոլխոզնիկի առանձին-առանձին որոշ առաջադրանք է տալիս, օրվա վերջում ընդունում նրանցից աշխատանքը և կատարած աշխատանքի քանակին ու որակին համապատասխան գրանցում աշխօր: Երկրորդ՝ երբ բամբակի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի և այգեգործական մի շարք կոլխոզներում ցանքի կամ այգիների որոշ տարածություններ ամրացվում են ամբողջ վեգետացիայի շրջանում առանձին կոլխոզնիկների՝ մշակելու համար և իրենց կատարած աշխատանքների դիմաց ըստ արտադրական նորմաների ստանում աշխօրեր: Անհատական գործավարձի ժամանակ պարզ կերպով երևան է գալիս յուրաքանչյուր կոլխոզնիկի կատարած աշխատանքի քանակը

և որակը, վերանում է աշխատանքի դիմազրկությունը, բարձրանում է ամեն մի կոլխոզնիկի պատասխանատվությունն իր կատարած աշխատանքի համար ու ամեն մեկը ձգտում է որքան կարելի է լավ և շատ աշխատել ու շատ էլ ստանալ։

Արտաշատի շրջանի Գետազատ գյուղի կոլխոզի անվանի օղակավար Մարինոս Քարամյանն իր օղակում անհատական գործավարձի լայն կիրառման, ագրոկանոնների ճիշտ կատարման շնորհիվ 7,5 հեկտար խաղողի այգու յուրաքանչյուր հեկտարից ստացավ 174 ցենտներ բերք, իսկ նույն կոլխոզի բրիգադիր Հրանտ Մարգարյանը 23 հեկտար խաղողի այգու յուրաքանչյուր հեկտարից՝ ստացավ 114,5 ցենտներ բերք։ Հոկտեմբերյանի շրջանի Փոքր Շահրիար գյուղի կոլխոզի օղակավարուհի Հոկտեմբերիկ Քոլոզյանն իր օղակին ամրացված երեք հեկտար բամբակենու ամբողջ աշխատանքը անհատական գործավարձի միջոցով կատարելու շնորհիվ ամեն մի հեկտարից ստացավ 85 ցենտներ բամբակի հումք։ Հոկտեմբերյանի շրջանի Սովետական, Շամշադինի շրջանի Մովսես, Ախուրյանի շրջանի՝ Ախուրյան գյուղերի կոլխոզներից կարելի է բերել բազմաթիվ օ-



րինակներ ցույց տալու համար, թե բերքատվության բարձրացման գործում ինչպիսի խոշոր ցուցանիշների են հասնում այն բրիգադներն ու օղակները, որոնք իրենց աշխատանքներում լայնորեն կիրառում են անհատական գործավարձը։

Այժմ, երբ հրապարակի վրա է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին», երբ սոցիալիստական դաշտերում որոշվում է 1948 թվականի բերքի բախտը, մեր գյուղական ագիտատորներից պահանջվում է օգնել կոլխոզի վարչություններին՝ դաշտային գյուղատնտեսական աշխատանքների մեջ ընդգրկել բոլոր կոլխոզնիկներին, լայնորեն կիրառել ու արմատավորել աշխատանքի անհատական գործավարձը, որը խոշորագույն խթան է հանդիսանում Ստալինյան նոր հնգամյակով կոլխոզային գյուղացիության առաջ դրված հսկայական խնդիրների կատարման ու գերակատարման գործում։

Ս. ՓԱՅՏՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության կոլխոզ կազմբաժնի պետ)

# ՈՒԹ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՎԱՐՇԱՎԱՅԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

1948 թվի հունիսի 23 և 24-ին Լեհաստանի մայրաքաղաքում՝ Վարշավայում տեղի ունեցավ ՍՍՌՄ-ի, Ալբանիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի, Լեհաստանի, Ռումինիայի և Հունգարիայի արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունը։

Խորհրդակցությունը քննության առավ մի շարք հարցեր՝ կապված գերմանական պրոբլեմի հետ։

Հունիսի 24-ին Վարշավայի խորհրդակցությունը մի հայտարարություն ընդունեց Գերմանիայի մասին Լոնդոնի խորհրդակցության որոշումների առթիվ։

Վարշավայի խորհրդակցությունը մի նոր, մեծ ավանդ հանդիսացավ, ոչ միայն գերմանական պրոբլեմի դեմոկրատական ու արդարացի լուծման գործում, այլև ամբողջ աշխարհում կայուն խաղաղության և ժողովրդական դեմոկրատիայի համար մղվող պայքարի գործում։

Վարշավայի խորհրդակցության մասնակիցների հունիսի 24-ի համատեղ հայտարարությունը մի անգամ ևս մերկացրեց անգլո-ամերիկյան իմպերիալիստների նենգ քաղաքականությունը և մի ուժեղ հարված հանդիսացավ՝ ուղղված այդ երկրների ռեակցիոն և հակաժողովրդական քաղաքականության դեմ։

Ընթացիկ տարվա հունիսի սկզբներին Լոնդոնում հրավիրվեց երեք տերությունների՝ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի խորհրդակցությունը գերմանական հարցի վերաբերյալ։

Հրավիրելով Լոնդոնի խորհրդակցությունը, երեք տերությունները միակողմանիորեն խախտեցին Պոտսդամի որոշումները և փաստորեն նպատակ դրեցին չիկվիդացնել Պոտսդամի կոնֆերանսում ստեղծված արտաքին գործերի մինիստրների խորհուրդը, ինչպես նաև Գերմանիայում գոյություն ունեցող քառակողմ վերահսկիչ մեխանիզմը՝ կազմված հիշյալ երկրների ներկայացուցիչներից։

Լոնդոնի այդ միակողմանի խորհրդակցու-

թյունը 1948 թվի հունիսի 7-ին մի դեկլարացիա հրատարակեց, որը պարզորոշ կերպով ցույց տվեց անգլո-ամերիկյան իմպերիալիստների՝ Գերմանիայի նկատմամբ կայացրած որոշումների իսկական էությունը։

Այդ որոշումները, ինչպես նրանց բնորոշում է Վարշավայի խորհրդակցության հունիսի 24-ի հայտարարությունը, մի կողմ են նետում գերմանական հարցի ճիշտ լուծման համար ամենակարևոր և անհրաժեշտ հարցերը, ինչպիսիք են Գերմանիայի ապառազմականացման և դեմոկրատացման խնդիրները, Գերմանիայի կողմից ռեպարացիոն պարտավորությունների կատարման հարցը, Գերմանիան խաղաղասեր և դեմոկրատական երկիր դարձնելու և ապագայում գերմանական ագրեսիան կանխելու հարցը և այլ կարևոր հարցեր ու հետապնդում են այնպիսի նպատակներ, որոնք արմատապես տարբերվում են Գերմանիայի նկատմամբ չորս տերությունների կողմից ժամանակին բազմիցս նշված նպատակներից։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստների և նրանց կազմակերպած լոնդոնյան տխրահռչակ խորհրդակցության իսկական նպատակն է վերածնել Գերմանիայի ռազմական պոտենցիալը կազմող Ռուրի ծանր արդյունա-



բերությունը, կտրել Արևմտյան Գերմանիան մնացած Գերմանիայից և ներգրավել այն ԱՄՆ-ի ու Մեծ Բրիտանիայի ռազմա-ստրատեգիական ոճրագործ ծրագրերի մեջ։

Լոնդոնի խորհրդակցության հունիսի 7-ի կոմյունիկեն ցույց է տալիս, որ անգլո-ամերիկյան իմպերիալիստները աշխատում են լուծել այսպես կոչված գերմանական պրոբլեմը, առանց հաշվի առնելու ազատասեր ու խաղաղասեր ժողովուրդների և բուն գերմանական ժողովրդի կամքը։ Պարզ և հասկանալի է, որ այդ բանը նրանց չի հաջողվի։

Գերմանիայի հետ կապված հարցերը միաժամանակ սերտորեն կապված են ամբողջ հետպատերազմյան Եվրոպայի և ողջ հետպատերազմյան աշխարհի կարևոր տնտեսական ու քաղաքական հարցերի հետ, ամբողջ աշխարհում կայուն խաղաղության և ժողովրդական դեմոկրատիայի հաղթանակի համար մղվող ժողովուրդների հերոսական պայքարի հետ։

Գերմանիայի հետ կապված բոլոր հարցերի ճիշտ և արդարացի լուծումը պահանջում է ամենից առաջ հաստատ մնալ Յալթայի և Պոտսդամի պատմական որոշումների հողի վրա, գերմանական հարցի վերաբերյալ ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և

Ֆրանսիայի միջև կայացված նախկին որոշումների հողի վրա, ինչպես նաև շահագրգռված երկրների հետ կոնսուլտացիա կատարելու և նրանց կարծիքը ստանալու հողի վրա։

Գերմանական հարցի հետ կապված իրենց կարծիքները հայտարարելու և լոնդոնյան խորհրդակցության միակողմանի կոմյունիկեն մերժացնելու նպատակով Վարշավայում գումարվեց ութ տերությունների արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունը։

Վարշավայի խորհրդակցության հունիսի 24-ի հայտարարությունը մերկացրեց լոնդոնյան խորհրդակցությունը և մասնավորապես նրա հրապարակած հունիսի 7-ի կոմյունիկեն։ Հայտարարությունը ցույց տվեց հետևյալը.

Լոնդոնի խորհրդակցության նպատակն է՝ ավարտել Գերմանիայի պառակտումը։ Դա հետևանք է այն բանի, որ անգլո-ամերիկյան իմպերիալիստները հույս չունեն իրենց պլանների մեջ ներգրավել ամբողջ Գերմանիան և ցանկանում են մասնատելով այն, իրենց գործիքը դարձնել Գերմանիայի գեթ մի մասը՝ Արևմտյան Գերմանիան։ Ի՞նչ են անում անգլո-ամերիկյան իմպերիալիստները հետապնդելով այդ նպատակը։ Նրանք



նախատեսում են հրավիրել Արևմտյան Գերմանիայում այսպես կոչված սահմանադիր ժողով, որը պետք է կազմակերպի իր տիկնիկային կառավարությունը։ Այդ կառավարությունն ըստ անգլո-ամերիկյան պլանների, պետք է խաղալիք դառնա անգլո-ամերիկյան իմպերիալիստների ձեռքին։ Նրա կազմի մեջ պետք է մտցվեն ամերիկյան և անգլիական մոնոպոլիստական կապիտալի հետ կապված շրջանների մարդիկ՝ այսինքն գերմանական ժողովրդի և նրա դեմոկրատական միավորման ձգտումների ամենաոխերիմ թշնամիները։

Նախապատրաստելով Գերմանիայի քաղաքական պառակտումը, ամերիկյան, անգլիական և ֆրանսիական իմպերիալիստները անցկացրին օկուպացման իրենց գոտիներում հունիսի 18-ի դրամական սեպարատ (անջատ) ռեֆորմը, որը տնտեսական պատնեշ ստեղծեց Արևելյան և Արևմտյան Գերմանիայի միջև և սպառնում է Արևմտյան Գերմանիայի աշխատավորությանը գործազրկության աճով և նյութական դրության վատթարացումով։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստների կողմից անցկացվող Գերմանիայի պառակտման և մասնատման քաղաքականությունը

վիժեցնում է հաշտության պայմանագրի կնքումը Գերմանիայի հետ և դրա փոխարեն առաջ է քաշում Գերմանիայի արևմտյան գոտիներում այսպես կոչված օկուպացիոն ստատուտի կիրառման հարցը։ Այդ օկուպացիոն ստատուտը (կանոնադրությունը) պետք է կամայականորեն երկարաձգի Գերմանիայի օկուպացիան և գերմանական աշխատավոր բնակչության ուսերի վրա դնի օկուպացիոն ծախսերի ծանր բեռը։

Վարշավայի խորհրդակցության հայտարարությունը նշում է, որ անգլո-ամերիկյան իմպերիալիստները աշխատում են հետ նետել Գերմանիան և պարտադրել գերմանական ժողովրդին պետության ֆեդերալիստական կառուցվածք, այսինքն մի այնպիսի կառուցվածք, որի պայմաններում կենտրոնական կառավարությունը փաստորեն պետք է կատարի երկրորդական ֆունկցիաներ, իսկ գլխավոր իշխանությունը պետք է հանձնվի առանձին երկրամասերի։ Սա գերմանական շովինիստների համար հնարավորություն կստեղծի օգտագործել Գերմանիայի միասնության գաղափարը իրենց ռևանշիստական պրոպագանդայի օգտին և նախապատրաստել գերմանական նոր ագրեսիա։

Միաժամանակ այդ ծրագիրը նշանակում



է վերացնել գերմանական ինքնուրույն պետությունը, դարձնելով Գերմանիան խաղալիք անգլո-ամերիկյան իմպերիալիզմի ձեռքում։

Գերմանիայի արհեստական մասնատումը չի համապատասխանում գերմանական ժողովրդի շահերին։ Գերմանիան արդեն եղել է մասնատված դրության մեջ 19-րդ դարում և նրա վերադարձը այդ վիճակին պատմական տեսակետից հետադարձ մի քայլ կլինի։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները խրախուսում են գերմանական ռևիզիոնիստական այն տարրերի գործունեությունը, որոնք աշխատում են այժմ վերանայել Գերմանիայի՝ նկատմամբ Յալթայի և Պոտսդամի կոնֆերանսների որոշումները, մասնավորապես լեհ-գերմանական սահմանի հարցում, որն անցնում է Օդերի և Արևմտյան Նեյսեի վրայով։ Սակայն այդ փորձերը ապարդյուն կանցնեն, որովհետև այդ սահմանը պատմականորեն պատճառաբանված միակ արդարացի սահմանն է Լեհաստանի և Գերմանիայի միջև, որովհետև նա «հանդիսանում է անսասան սահման՝ խաղաղության սահման»։

Վարշավայի խորհրդակցության հայ-

տարածությունը պարզորոշ կերպով ցույց տվեց, որ երեք տերությունների Լոնդոնի խորհրդակցության որոշումները Արևմտյան Գերմանիայի էկոնոմիկան ենթարկում են Ամերիկայի Միացյալ Նահանգների և Անգլիայի իմպերիալիստական նպատակներին, կախման մեջ են դնում այն Եվրոպայում այսպես կոչված «Մարշալլի պլանի» անցկացումից և դրանով է՛լ ավելի են խորացնում Եվրոպայի երկրների պառակտումը միմյանց հակադիր լագերների։

Լոնդոնի խորհրդակցությունը հատուկ քննության առավ նաև Ռուրի հարցը։ Ռուրը Գերմանիայի ածխի ու մետալուրգիայի ամենախոշոր կենտրոնն է։ Ռուրը եղել է գերմանական ռազմական մեքենայի ողնաշարը։ Անգլո-ամերիկյան իմպերիալիստները ցանկանում են վերականգնել գերմանական ագրեսիայի այդ բազան իրենց անմիջական միակողմանի վերահսկողության տակ։

Մերկացնելով անգլո-ամերիկյան իմպերիալիստներին, Վարշավայի ութ պետությունների արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունը միաժամանակ առաջ քաշեց գերմանական պրոբլեմի լուծման միակ արդարացի և ճիշտ բազան, որը հիմնըվում է հետևյալ սկզբունքների վրա։



Առաջին։ Մեծ Բրիտանիայի, ՍՍՌՄ-ի, Ֆրանսիայի և ԱՄՆ-ի համաձայնությամբ անցկացնել Գերմանիայի ապառազմականացման ավարտումն ապահովող միջոցառումներ։

Երկրորդ։ Որոշ ժամանակով չորս տերությունների՝ Մեծ Բրիտանիայի, ՍՍՌՄ-ի, Ֆրանսիայի ու ԱՄՆ-ի վերահսկողություն հաստատել Ռուրի ծանր արդյունաբերության նկատմամբ, նպատակ ունենալով զարգացնել Ռուրի արդյունաբերության խաղաղ ճյուղերը և թույլ չտալ Գերմանիայի ռազմական պոտենցիալի վերականգնումը։

Երրորդ։ Մեծ Բրիտանիայի, ՍՍՌՄ-ի, Ֆրանսիայի ու ԱՄՆ-ի կառավարությունների համաձայնությամբ կազմել համագերմանական ժամանակավոր դեմոկրատական խաղաղասիրական կառավարություն՝ Գերմանիայի դեմոկրատական պարտիաների և կազմակերպությունների ներկայացուցիչներից՝ գերմանական ագրեսիայի կրկնման դեմ երաշխիք ստեղծելու նպատակով։

Չորրորդ։ Հաշտության պայմանագիր կնքել Գերմանիայի հետ՝ Պոտսդամի որոշումներին համապատասխան, այն հաշվով, որ բոլոր տերությունների զորքերը Գերմանիայից դուրս բերվեն հաշտության պայմանագրի

Գինը 50 կոպ.

կնքումից հետո, մեկ տարվա ժամկետում։

Հինգերորդ։ Միջոցառումներ մշակել գերմանական ագրեսիայից տուժած պետությունների հանդեպ Գերմանիայի ռեպարացիոն պարտավորությունները Գերմանիայի կողմից կատարվելու վերաբերյալ։

Ութ երկրների արտաքին գործերի մինիստրների Վարշավայի խորհրդակցությունը միջազգային մեծ նշանակություն ունեցող իրադարձություն հանդիսացավ, իսկ հունիսի 24-ի նրա հայտարարությունը, ինչպես բնորոշում է «Պրավդան», հանդիսանում է «խաղաղության իսկական մանիֆեստ»։

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Պատասխանատու խմբագիր
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՎՖ 03948 Պատվեր № 463 Տիրաժ 9.100
Ստորագրված է տպագրության 4/VII 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. Վարչ. № 2 տպարան, Երևան